ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ




**Խմբագրության հասցեն.—** *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78*

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

**ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ**

**№ 16**
**ՕԳՈՍՏՈՍ**
**1964**

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ


ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՐՏԻԱՅԻՑ ԴԵՊԻ ԱՄԲՈՂՋ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՐՏԻԱ*)

Խճճվելով կոնտեքստից ուրսած ցիտատների անդադար կրկնության մեջ և համոզվելով, որ անմտությունն է մարքսիզմի խեղաթյուրումը որպես իսկական մարքսիզմ ներկայացնելու մտադրությունը, չինական պրոպագանդիստները փորձում են բանն այնպես պատկերել, թե իբր Սովետական Միությունը դեռ ապրում է անցման ժամանակաշրջան, թե «ով՝ ում» հարցը մեր երկրում առայժմ լիովին ու վերջնականապես լուծված չէ, թե «դեռ գոյություն ունի կապիտալիզմի վերականգնման վտանգը», ուստի և անհրաժեշտ են պրոլետարիատի դիկտատուրան ու պրոլետարական պարտիան։ Չինական մամուլն այս գնահատականները ներկայումս ամեն կերպ պրոպագանդում է։ Մասնավորապես այդ գնահատականները պարունակվում են Չինաստանի կոմպարտիայի Կենտկոմի պրոպագանդայի բաժնի վարիչի տեղակալ Ժոու Յանի՝ հասարակական գիտությունների աշխատողների առջև 1963 թվականի հոկտեմբերի 26-ին ունեցած դիրքավորող ելույթի մեջ։

Չինական ղեկավարները ցանկանում են Սովետական Միությունը տեսնել ոչ թե այնպիսին, ինչպիսին նա կա, այլ այն վիճակում, ինչ վիճակում եղել է մոտ 35 տարի

*) Սկիզբը՝ «Ա. Բ.»-ի 14 և 15 համարներում։

առաջ՝ նէպի ժամանակաշրջանում։ Արդյոք, կարելի՞ է վիճել այդպիսի պրիոմների դիմող մարդկանց հետ։ Գուցե նրանց խորհուրդ տանք դիմելու այն մարդու ասույթներին, որի գնահատականները նրանք անշեղորեն կիրառում են և որի անունը սիրով օգտագործում են ՍՄԿՊ-ի ու միջազգային կոմունիստական շարժման դեմ իրենց պայքարում։

Զգիտես ինչու, չինական ղեկավարներն այնպես են ձևանում, թե չեն կարդացել ոչ նոր Կոնստիտուցիայի մասին, ոչ պարտիայի XVIII համագումարում Ի. Ստալինի զեկուցումները, ոչ էլ նրա մյուս ճառերը, որոնցում ասված է, որ դեռ երեսնական թվականների կեսերին Սովետական Միությունում վերջնականապես լուծված է եղել «ով՝ ում»-ի հարցը, վերացված են եղել շահագործող դասակարգերը և սոցիալիզմը լիակատար հաղթանակած է եղել։ Եթե հետևենք չինական ղեկավարների պնդումներին, ապա կստացվի այնպես, թե ՍՍՌՄ-ն այդ ժամանակից ի վեր ոչ միայն ոչ մի տեղաշարժ չի կատարել, այլև նրա առջև դեռ ծառացած են վաղուց արդեն լուծված խնդիրները։

Որ սոցիալիզմի օրոք դեռ դասակարգեր կան՝ դա աքսիոմա է։ Հարցի էությունն այն է, թե ինչ դասակարգեր են դրանք։ Սոցիալիստական հասարակարգը ՍՍՌՄ-ում բաղկացած է բարեկամական դասակարգերից՝ բանվորներից, գյուղացիներից և ժողովրդական ինտելիգենցիայի սոցիալական խմբից։ Նրանք միաձուլված են արմատական շահերի ընդհանրությամբ, մարքսիստական-լենինյան գաղափարախոսությամբ և կոմունիզմ կառուցելու միասնական նպատակով։

Եթե կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանը բնորոշվում է տապալված, բայց դեռ չվերացված շահագործող դասակարգերի առկայությամբ, հետևաբար նաև դասակարգային պայքարով, ապա անցումը սոցիալիզմից կոմունիզմին կատարվում է հասարակության սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության պայմաններում։ Չինական ղեկավարները չեն ցանկանում հաշվի առնել այս բանը։ Նրանք հավանաբար կարծում են, թե ՍՄԿՊ-ն պետք է երկրի ներսում վարի դասակարգային պայքարի քաղաքականություն, արհեստականորեն թշնամանք սերմանի բանվորների ու կոլտնտեսականների միջև, բանվորներին ու կոլտնտեսականներին լարի ինտելիգենցիայի դեմ։

Իսկ ինչու՞ է Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունը, հակառակ բացահայտ փաստերի, հերյուրանքներ հորինում սովետական հասարակության մեջ դասակարգային պայքարի մասին։ Դժվար չէ հասկանալ այդ կեղծարարական և միևնույն ժամանակ շատ նախիվ պրիոմների նպատակը։ Արբելով ազգային-ազատագրական ռևոլյուցիայի իրականացման գործում ձեռք բերված աչքի ընկնող հաղթանակներով, ռևոլյուցիա, որը հիմնականում լուծեց հակաիմպերիալիստական, բուրժուա-դեմոկրատական խնդիրները, Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությունը պարզապես թերագնահատեց անցման ժամանակաշրջանի և՛ դժվարությունները, և՛ ժամկետները։ Հեգեմոնիզմի մոլուցքը նրանց հրեց էկոնոմիկայում ավանտյուրային ցատկերի ուղու վրա։ Եթե վերցնենք պարտիական շինարարության բնագավառը, ապա այդտեղ, արդեն VIII համագումարում՝ 1956 թվականին, այսինքն՝ ազգային մասշտաբով ռևոլյուցիայի հաղթանակից ընդամենը յոթ տարի հետո, սահմանվեցին պարտիայի ընդունելության միասնական պայմաններ՝ անկախ սոցիալական դրությունից։ Եվ դա անհամեմատ ավելի մանրբուրժուական երկրում, քան Ռուսաստանն է եղել։ Տնտեսական շինարարության և գյուղացիության կոոպերացման բնագավառում ձեռք բերված առաջին հաջողությունները գլխապտույտ առաջացրին չինական ղեկավարների մոտ, նրանց մեջ ստեղծեցին այնպիսի պատկերացում, թե իբր անցման ժամանակաշրջանն արդեն ետևում է մնացել, և որ Չինաստանը կկարողանա կոմունաների միջոցով արագ տեմպերով ավելի շուտ կոմունիզմին հասնել, քան այդ բանը կարող են անել Եվրոպայի սոցիալիստական երկրները, այդ թվում Սովետական Միությունը։

Օբյեկտիվ իրականությունը դաժանորեն վրեժ է լուծում, երբ նրա հետ հաշվի չեն նստում։ Տնտեսապես չհիմնավորված մաքսիմալիստական լոզունգները ձախողվեցին ու թանկ նստեցին երկրի էկոնոմիկայի վրա։ Եվ դրանից հետո, իր սխալները քողարկելու նպատակով, չինական ղեկավարությունը ծավալեց աղմկալի պրոպագանդիստական կամպանիա, որի նպատակն էր



գործն այնպես պատկերել, թե իբր անցման ժամանակաշրջանի խնդիրները լուծված չեն ոչ միայն Չինաստանում, այլև ՍՍՌՄ-ում ու բոլոր սոցիալիստական երկրներում, թե ՍՍՌՄ-ը մի փոքր ավելի հարուստ է Չինաստանից, բայց սոցիալական նվաճումների տեսակետից նա էլ հեռու է կոմունիզմից, ինչպես Չինաստանը։

Դա միևնույն է, թե որևէ մեկը կեսօրին փորձի պնդել, թե լույսը դեռ նոր է բացվում։ Այդպիսի պնդումները հիշեցնում են կախարդական խոսքեր, որոնք ընդհանուր ոչինչ չունեն իսկապես օրվա այդ ժամը պարզելու ձգտման հետ։

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները կեղծ ռևոլյուցիոնությամբ հայտարարում են. «Մարքսիստ-լենինյանների տեսակետից, դասակարգերից դուրս կամ դասակարգերից վեր կանգնած պարտիաներ գոյություն չունեն։ Բոլոր քաղաքական պարտիաները դասակարգային բնույթ ունեն։ Պարտիականությունը դասակարգայնության կենտրոնացված արտահայտությունն է»։ Սա մարքսիզմ-լենինիզմի այբբենական ճշմարտությունն է։ Բայց չինական գաղափարախոսները չեն ուզում մտածել կյանքի կողմից առաջադրվող հարցի վրա՝ ինչո՞վ է արտահայտվում մարքսիստական-լենինյան պարտիաների դասակարգայնությունը սոցիալիստական հասարակարգում, որտեղ չկան հակամարտ դասակարգեր՝ շահագործողները ոչնչացված են, մարդու շահագործումը մարդու կողմից վերացված է ընդմիշտ, որտեղ ամրապնդվել է հասարակության սոցիալ-քաղաքական միասնությունը։ Կոմունիստներն այս հարցին պատասխանում են հետևյալ կերպ. մարքսիստական-լենինյան պարտիայի դասակարգայնությունն այդպիսի հասարակարգում կայանում է կոմունիզմին՝ միջազգային պրոլետարիատի բարձրագույն դասակարգային սկզբունքին հավատարիմ լինելու, կոմունիզմը՝ միջազգային բանվոր դասակարգի այդ վերջնական նպատակն իրականացնելու մեջ, կապիտալիզմի ու շահագործողների, իմպերիալիստական, նացիոնալիստական ու քաղաքական ճնշման բոլոր ձևերի նկատմամբ անհաշտվողականության մեջ։

«Չինականացված մարքսիզմի» տեսակետից ամեն ինչ՝ անկախ տեղից և հանգամանքներից, լուծվում է



պրիմիտիվ կերպով, բոլոր ժամանակների և հասարակարգերի համար մեկ շաբլոն սխեմայով՝ պարտիաներ-հակամարտ դասակարգեր-դասակարգային պայքար։ Չէ՞ որ մեր երկիրը չի կարող դեպի կյանքի վաղուց անցած աստիճանները վերադառնալ սոսկ այն պատճառով, որ չինական ղեկավարները չեն ցանկանում կամ չեն կարողանում հասկանալ մեր սոցիալիստական երկրի կյանքը, կոմունիզմի համար մեր ժողովրդի պայքարը, ուրիշ երկրների մասին դատում են միայն ըստ իրենց երկրի վիճակի։ Դասակարգայնությունը ճիշտ, լենինաբար հասկանալու համար չինական ղեկավարները պետք է կանգնած լինեն ռեալ իրականության փաստերի, այլ ոչ թե պրիմիտիվ՝ շաբլոն սխեմաների հողի վրա կամ, ինչպես իրենք են սիրում ասել, «Քայլեն երկու ոտքով, այլ ոչ թե մեկ ոտքով և ոչ թե մեկուկես ոտքով»։

## Ինչի՞ համար է դա նրանց պետք

Անարդարություն կլիներ չինական ղեկավարներին համարել այնպիսի մարդիկ, որոնք իսկապես շահագրրգռված են սկզբունքային հարցերի շուրջը բանավեճով, ճշմարտությունը պարզելով։ Այն եղանակները, որոնց դիմում են նրանք, բավականին պարզ կերպով վկայում են, որ պրոլետարական պարտիան համաժողովրդական դառնալու օրինաչափությունը ճանաչողների վրա թափվող կարկուտն ու որոտն ունեն միանգամայն որոշակի նպատակ։

Պատմականորեն այնպես է ստացվել, որ ՍՄԿՊ-ի համաժողովրդական բնույթի մասին դրույթները զարգացել են այն պայմաններում, երբ պարտիան վճռականորեն հաղթահարում էր Ստալինի անձի պաշտամունքը և երբ երկրում օբյեկտիվ հնարավորություններ էին ստեղծվել ժողովրդական մասսաների պահանջմունքներն ավելի լրիվ բավարարելու համար։

Դա հիվանդագին են ընդունում չինական ղեկավարները։ Ժխտելով ՍՄԿՊ-ի ժողովրդական բնույթը, նրանք զայրանում են այն բանից, որ սովետական կոմունիստներն անդուլ կերպով պրոպագանդում են այնպիսի լոզունգներ, ինչպիսին է «Ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար»։ Իր հրահանգչական զեկուցման մեջ Չժոու Յանը համարձակություն չի ունենում

խոստովանելու, որ արդի պայմաններում Չինաստանի արտադրողական ուժերի մակարդակը, չինական ղեկավարների ավանդույթային, սուբյեկտիվիստական կուրսը նրանց թույլ չեն տալիս վարելու այդպիսի քաղաքականություն: Ուստի «հիմնավորվում է» այն թեզը, թե իբր «Ամեն ինչ հանուն մարդու» լոզունգը կարող է առաջ քաշվել «միայն այն ժամանակ, երբ ամբողջ աշխարհում կլինի կոմունիզմի դարաշրջան»: Տարվելով հասարակական գիտությունների աշխատողներին հրահանգավորելով, Չժոու Յանը «մոռանում է», թե ինչ է գրված Չինաստանի կոմպարտիայի կանոնադրության մեջ, որն ընդունվեց 1956 թվականին, երբ չինական ղեկավարներն իրականացնում էին հիմնականում ճիշտ քաղաքականություն: Իսկ այնտեղ ասված է, որ «պարտիայի ամբողջ աշխատանքի հիմնական նպատակն է ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական պահանջմունքների առավելագույն բավարարումը» (տես՝ Չինաստանի կոմպարտիայի համաչինական VIII համագումարի նյութերը, էջ 509). սա միայն խմբագրական տեսակետից է տարբերվում այն ձևակերպումից, որն այժմ քննադատում են չինական ղեկավարները: Դա ճիշտ դիրքերից շեղվելու, նույնիսկ սեփական փաստաթղթերը ռևիզիայի ենթարկելու մի նոր օրինակ է, որն ընդգծում է Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների տեսական ու քաղաքական սնանկությունը: Ինչպես երևում է, Չինաստանի ներքին դրությունը չինական ղեկավարներին այժմ հնարավորություն չի տալիս խոսելու աշխատավորների բարեկեցության բարձրացման մասին, ուստի և նրանք հարձակվում են այն պարտիայի վրա, որը հոգատարությունը ժողովրդի բարեկեցության նկատմամբ համարում է իր գործունեության բարձրագույն սկզբունքը:

Ստալինի պաշտամունքի դեմ ՍՄԿՊ-ի ծավալած պայքարը պարզապես չինական ղեկավարների սրտով չէր, որովհետև դա հարվածում էր անհատի պաշտամունքին, որը Չինաստանում հիրավի չլսված չափեր է ընդունել: Սկզբում ընդունելով, որ ՍՄԿՊ XX համագումարը «համոզիչ կերպով պարզաբանեց կոլեկտիվ ղեկավարության սկզբունքն անշեղորեն պահպանելու և անհատի պաշտամունքի դեմ պայքարելու կարևորագույն նշանակությունը», շուտով ՍՄԿՊ-ի և ամբողջ միջազգային կոմունիստական շարժման պայքարն անհատի



պաշտամունքի դեմ Պեկինում հայտարարեցին «սխալ» և «վնասակար»: Չինական ղեկավարները Ստալինի անունն օգտագործում են, որպեսզի փառաբանեն ղեկավարման արատավոր մեթոդները, քողարկեն պարտիական կյանքի նորմաների խախտումները և, իրենց բարձրացնելով, զրպարտեն պեկինցի պառակտիչների անվայել վարմունքը դատապարտող մյուս կոմունիստական պարտիաների ղեկավարներին:

Չինաստան ժամանողներն այն հաստատ տպավորությունն են ստանում, որ մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրությունն այնտեղ սպառվում է մեկ մարդու ստեղծագործությունների ուսումնասիրմամբ: Համենայն դեպս ոչ ոք չի ասում, թե ինքը կարդում է Մարքսի և Էնգելսի աշխատությունները, ծանոթանում է գիտական կոմունիզմի հիմնադիրների որևէ ստեղծագործությանը: Չինաստանում Վ. Ի. Լենինի երկերի հրապարակումը չնչին տպաքանակով փաստորեն նշանակում է, որ այդ երկերն անմատչելի են ընթերցողների լայն մասսաների համար:

Դրա փոխարեն Մաո Ցզե-դունի՝ 380 միլիոն օրինակով հրատարակված ստեղծագործությունների մասին ամենուրեք խոսում ու գրում են ոչ այլ կերպ, քան որպես ուղի լուսավորող արևի, որպես բարձրագույն իմաստության մասին: Պարտիայի անդամին սովորեցնում են, որ նա Մաոյի աշխատություններն ունենա երեք տեղ՝ տանը, գրպանում և աշխատանքի վայրում, և Մաոյի պատգամները հիշի օրական առնվազն երեք անգամ: Աղոթքային վերաբերմունքը Մաոյի անձի նկատմամբ դրսևորվում է նաև այն բանում, որ չինացու ստացած սննդի, երեխաների առողջության, այս կամ այն հաջողության համար շնորհակալություն են հայտնում նրան:

Դժվար չէ հասկանալ, թե ինչու չինական ղեկավարները, այդպիսի միստիկական մթնոլորտ ստեղծելով Մաոյի անձի շուրջը, հանդես են գալիս ՍՄԿՊ-ի դեմ, որը համարձակորեն մերկացրեց Ստալինի պաշտամունքը և ցույց տվեց մարքսիզմ-լենինիզմի հետ անհատի ամեն մի պաշտամունքի անհամատեղելիությունը:

Չինական ղեկավարները պարտիայի մեջ արմատավորում են այնպիսի կարգեր, որոնք ընդհանուր քիչ բան ունեն դեմոկրատիայի հետ, պատվաստում են այնպիսի բարքեր, որոնք քաջ հայտնի են որպես անհատի պաշտամունքի անխուսափելի ծնունդ:

Չինաստանի կոմպարտիայի VIII համագումարում որպես խոշոր թերություն նշվեց այն, որ 11 տարի պարտիայի համագումար չի հրավիրվել։ Բայց պարզվեց, որ այդ քննադատությունը ձևական է։ Չնայած ըստ նոր կանոնադրության՝ համագումարները պետք է հրավիրվեն առնվազն 5 տարին մեկ անգամ, VIII համագումարից հետո արդեն անցել է ավելի քան յոթ և կես տարի, իսկ Չինաստանի կոմպարտիայի հերթական համագումարի մասին առայժմ խոսք չկա։ Իսկ եթե հաշվի առնենք, որ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները վերջին 4 տարում իրենց քաղաքականության մեջ կատարել են այնպիսի շեշտակի շրջադարձ, որը իրավունք ուներ որոշել միայն համագումարը, ապա ավելի պարզ կդառնա, թե ինչու չինական ղեկավարների համար այդքան ատելի են պարտիայի ժողովրդական բնույթի մասին դրույթները և դրանից բխող՝ դեմոկրատական պրակտիկայի ընդլայնման դրույթները։

Եթե Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն ավելի հետևողական լինեին, նրանք պետք է «մերկացնեին» իրենց պարտիայի VIII համագումարի նյութերը։ Չէ՞ որ դրանցում խոսվում է այն մասին, որ սխալ են միայնակ, արտաքին աշխարհից կտրված սոցիալիզմ կառուցելու փորձերը (տես Չինաստանի կոմպարտիայի համաչինական VIII համագումարի նյութերը։ Պետքաղհրատ, 1956, էջ 132, ռուսերեն), որը, ինչպես ցույց է տվել փորձը, յուրաքանչյուր անգամ, երբ ղեկավարները ձգտել են վերցնել ոչ ռեալ տեմպեր, ստացվել է այնպես, ինչպես ասված է «Շտապողի մայրը տղա չի բերի» ասացվածքում (էջ 224), խոսվում է ժողովրդական Չինաստանի, Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների օգնության մեծ նշանակության մասին (էջեր 4, 125, 164 և այլն), այն մասին, թե ինչպես չի կարելի ամբարտավանություն, մեծապետական արարքներ թույլ տալ և մեծամտանալ ռևոլյուցիայի հաղթանակի ու շինարարության որոշ հաջողությունների հետևանքով (էջ 5), որ մանրբուրժուական արատները նման են մոլախոտերի, որոնց «տափաստանային հրդեհը լրիվ չի այրում և դրանք նորից են աճում գարնանային քամուց» (էջ 374)։ Այս ամենն այժմ ընդունվում է որպես չինական ղեկավարների այժմյան գծի սուր քննադատություն։ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն իրենց պահում են այնպես, ասես պարտիայի VIII համագումար



առհասարակ չի եղել, բայց դրա փոխարեն նրանք կատաղի հարձակումներ են գործում այն ամենի վրա, ինչ կատարվում է Սովետական Միությունում, և պարտիայի ժողովրդական բնույթի վերաբերյալ դրույթի քննադատությունը նրանց կողմից մղվող կամպանիայի սոսկ մի մասն է, կամպանիա, որը չինական ժողովրդի ուշադրությունը հեռացնում է իրենց սխալ քաղաքականության հետևանքով երկրում առաջացած ներքին դժվարություններից։

Վերջին տարիներս չինական մամուլն ավելի ու ավելի քիչ է լուսաբանում պարտիական կյանքի հարցերը, շոշափում պարտիական ղեկավարման մեթոդները։ Փաստորեն այդ բնագավառը գաղտնի է պահվում, դառնում է ինչ-որ «պատերազմական գաղտնիք»։ Բայց տիրապետող ոճի մասին կարելի է դատել այն բանով, որ նրանք համառորեն կրկնում են, թե «քաղաքականությունը՝ հրամանատարական ուժ է»՝ մի դրույթ, որը ծառայում է որպես վարչարարության ու վոլյունտարիզմի տեսական հիմնավորում, և գավառային թերթերի էջերը թափանցող այն խոստովանումով, որ պարտիական աշխատողների թվում քիչ չեն միանձնյա կարգադրությունների սովորած մարդիկ, որ տեղերում ստեղծվել են «անհատի պաշտամունքներ», որոնց ժողովուրդն անվանում է «կենդանի բուդդաներ»։

Հայտնի է, որ ինչքան քիչ է պարտիական դեմոկրատիան, այնքան ավելի բազմամարդ է դառնում պարտիական ապարատը։ Կոմունիստական պարտիաներից ոչ մեկը չունի այնպիսի հսկայական ապարատ, ինչպիսին՝ Չինաստանի կոմպարտիան։ Օրինակ, Ֆուշունի ածխավազանում 1960 թվականին 3500 կոմունիստին ընկնում էր ավելի քան 100 ազատված պարտիական աշխատող։ Անշանում պարտիայի 24 հազար անդամներին ընկնում էր 2510 ազատված պարտիական աշխատող և հասարակական կազմակերպությունների աշխատողներ։ Շանհայի դիզելի գործարանում կային 500 կոմունիստներ և 25 ազատված պարտիական աշխատողներ։ Այդ գործարանի 4750 բանվորներին ու ծառայողներին ընկնում էր հասարակական կազմակերպությունների 600 ազատված աշխատող։ Այսպիսով, 25—40 կոմունիստին՝ մեկ ազատված պարտիական ղեկավար։ Թե պրակտիկայում դա ինչ է նշանակում, կարելի է դատել Մաո Ցզե-դունի այն ցուցումով, որ քար-

*տուղարը պետք է լինի լավ «ջոկի հրամանատար» (տես՝ VIII համագումար, էջ 295): Այս խոսքերը վկայակոչում, դրանցով ամեն օր ղեկավարվում են, քարտուղարին խսկապես դիտելով որպես հրամանատար, պարտիական կազմակերպությունը՝ որպես զինվորական ստորաբաժանում, իսկ պարտիական կյանքը որպես բանակային կարգ ու կանոն: Այժմ չինական մամուլում կարելի է հանդիպել նաև այսպիսի պնդման. «Յուրաքանչյուր առաջին քարտուղար գերագույն գլխավոր հրամանատար է»:*

*Պարտիական ղեկավարների ու շարքային կոմունիստների փոխհարաբերությունների մասին պատկերացում է տալիս այսպես կոչված «խոյբաոյի» սիստեմը, որը կոպիտ կերպով հակասում է պարտիական կյանքի վերաբերյալ մարքսիստական-լենինյան հայացքներին: Ըստ այդ սիստեմի, յուրաքանչյուր կոմունիստ քարտուղարին կանոնավոր կերպով զեկուցում է իր աշխատանքի ու կյանքի մասին: Ըստ որում նա պետք է հիշի Մաո Ցզե-դունի հետևյալ բառերը. «Եթե գիտես՝ ասա, եթե ասում ես՝ ասա ամեն ինչ: Նախազգուշացնողին նախատել չի կարելի, լսողը՝ կսովորի»: Այլ կերպ ասած, կոմունիստից պահանջում են պատմել ամեն ինչի մասին՝ ընդհուպ մինչև իր տրամադրությունը, կասկածները և այլն, ըստ որում ոչ միայն իր, այլև այն մարդկանց մասին, որոնց հետ շփվում է: «Խոյբաոյի» սիստեմը, որը հռչակվում է որպես ղեկավարների հոգատարություն պարտիայի անդամի նկատմամբ, իսկ իրականում մատնությունների օրինականացված սիստեմ է, ճնշող մթնոլորտ է ստեղծում պարտիական կազմակերպություններում, ծնում է քծնողների, զրպարտիչների և կարիերիստների:*

*Այդ նպատակին է ուղղված նաև այն մարդկանց դրական օրինակով բոլորին դաստիարակելու մեթոդը, ովքեր «անսահմանորեն նվիրված են Մաո-Ցզե-դունի գաղափարներին», մեթոդ, որն արմատավորվում է որպես քննադատության և ինքնաքննադատության փոխարինիչ:*

*Դեռ մի քանի տարի առաջ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները քննադատում էին պարտիայի ներսում տեղ գտած՝ մարքսիզմ-լենինիզմին խորթ հայացքներն ու ոճը. «գաղափարախոսության մեջ՝ սուբյեկտիվիզմը, աշխատանքում՝ բյուրոկրատիզմը և կազմակերպական բնագավառում՝ աղանդավորությունը» (Չինաստանի կոմպարտիայի VIII համագումար, էջ 5): Այժմ խոսք անգամ չկա շատ ավելի մեծ չափեր ստացած այդ արատները քննադատելու մասին: Չինաստանի կոմպարտիայի ղեկավարությունն աղնիվ քննադատությունից բարձր է դասում զրպարտությունը եղբայրական պարտիաների հասցեին: Բայց այդպիսի մեթոդը դեռ երբեք չի հանգեցրել ներքին պրոբլեմների լուծման:*



***

*Կոմունիստական պարտիայի վերաճումը ամբողջ ժողովրդի պարտիայի՝ օբյեկտիվ օրինաչափություն է: Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի սոցիալիստական բնույթը կհանգեցնի այն բանին, որ արտադրողական ուժերի աճի, հասարակության սոցիալական կառուցվածքի հետագա փոփոխությունների հետևանքով այդ օրինաչափությունն իր համար ուղի կհարթի Չինաստանում: Չինաստանի կոմպարտիայի այժմյան ղեկավարությունն արգելակում է այդ պրոցեսը: Սակայն մարդկանց իրավունք չի տրված իրենց հայեցողությամբ փոփոխելու հասարակական զարգացման օրենքները: Կգա ժամանակը, երբ Չինաստանի կոմպարտիայի պատմության մեջ կգրվեն էջեր, որոնք զայրույթով կդատապարտեն այն մարդկանց, ովքեր իր ժամանակին ցանկացել են մարքսիզմ-լենինիզմը ննդափոխել մանրբուրժուական նացիոնալիստական գաղափարախոսությամբ, ետ դարձնել պատմության զարգացումը:*

(Վերջ)

*(ՍՄԿՊ Կենտկոմի օրգան «Պարտիյնայա ժիզն» ամսագրի 1964 թ. 8-րդ համարից):*

---

# ԴԻՏՈՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Մտնում ենք Երևանի էլեկտրալամպերի գործարան։ Հենց գործարանի վարչության շենքի ճակատին կարդում ենք. «Գործարանի մարկան մեր պատիվն է», իսկ նրա դիմաց՝ կենտրոնական ծառուղու սկզբնամասում գրված է. «Մեր նշանաբանն է ապրել ու աշխատել կոմունիստաբար»։ Մեծ, շատ մեծ բովանդակություն կա այս երկու կոչերի մեջ, կոչեր, որոնք այսօր դարձել են լամպագործների պայքարի ու հաջողությունների նշանաբանը։

Դեռևս տարեսկզբին, արձագանքելով մայրաքաղաքի քիմիագործների հայրենասիրական նախաձեռնությանը, գործարանի կոլեկտիվը պարտավորվել էր յոթնամյակի վեցերորդ տարվա պլանը կատարել ժամկետից վաղաժամկետ շուտ՝ 104 տոկոսով և երկրին արտապլանային կարգով տալ 360 հազար ռուբլու արտադրանք, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը միշտ գերակատարել, թողարկվող արտադրանքի ինքնարժեքի հաշվին տնտեսել 50 հազար ռուբլի, յուրացնել նոր տեսակի լամպերի թողարկման տեխնոլոգիան և այլն։

Դիտողական նյութերից մեծ գոհունակությամբ իմանում ենք, որ լամպագործները պատվով են կատարում իրենց պարտավորությունները։ 1964 թվականի առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը կատարվել է ժամկետից 10 օր շուտ, համախառն արտադրանքի 1964 թվականի կիսամյա պլանը կատարվել է 106,4 տոկոսով, աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը՝ 102,8 տոկոսով, ինքնարժեքի իջեցումից ստացված տնտեսական օգուտը կազմել է 103,000 ռուբլի։ Կատարված է նաև ասորտիմենտի պլանային առաջադրանքը։

Գործարանի կոլեկտիվի համար սիստեմատիկաբար հաջողությունների հասնելը տրադիցիա է դարձել։ Պատահական չէ, որ 1964 թվականի առաջին եռամսյակին սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած աչքի ընկնող հաջողությունների համար գործարանը նվաճեց ժողտնտխորհի և ՀԱՄԽ-ի, ինչպես նաև ՀԿՊ Երքաղկոմի և քաղաքային սովետի գործադիր կոմիտեի փոխանցիկ դրոշները։



Անշուշտ այս հաջողություններին զգալիորեն նպաստում է հարուստ, նպատակասլաց ու բազմաբովանդակ դիտողական ագիտացիան, որին գործարանում մեծ նշանակություն է տրվում։ Այն ագիտատորներին օգնում է յուրաքանչյուր աշխատողի գիտակցությանը հասցնելու պարտիայի խոսքը, առաջավոր փորձը, արժեքավոր նախաձեռնությունը։ Նրա միջոցով լայնորեն տարածվում է սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման ընթացքը, խրախուսվում, փառաբանվում են արտադրության առաջավորները, նորարարներն ու ռացիոնալիզատորները։

Գործարանի ընդարձակ բակում աչքի ընկնող տեղում գեղեցիկ ձևով պատրաստված է պատվո տախտակը, որտեղ փակցված են արտադրության առաջավորների դիմանկարները։ Նրան կից ստենդի վրա կարդում ենք գործարանի 1964 թվականի սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունները, իսկ մի այլ ստենդի վրա ցույց է տրված արտադրական պլանների կատարման ընթացքն՝ ըստ ամիսների։

Գործարանում, նրա ծառուղիներում, արտադրամասերում շատ կան նպատակասլաց կոչեր, ստենդներ, դիագրամներ և այլն։ Ձևավորվել և կամ ձևավորման պրոցեսում են գտնվում մի շարք ծառուղիներ։ Այսպես, կենտրոնական ծառուղում զետեղված են կոմունիստական պարտիայի ու սովետական ժողովրդի անխախտ միասնությանը, խաղաղությանը նվիրված ուշագրավ պլակատներ, մի այլ ծառուղի ուղղակի կոչվում է «Յոթնամյակի ծառուղի», մեկ ուրիշը՝ «Ժողովուրդների բարեկամություն», իսկ հաջորդը արդեն նվիրված է գործարանի առաջավորներին և հենց այդպես էլ կոչվում է՝ «Առաջավորների ծառուղի»։

Մտնում ենք գործարանի ամենամեծ արտադրամասերից մեկը՝ նորմալ լուսավորման լամպերի հավաքման արտադրամասը, որը պայքարում է կոմունիստական աշխատանքի պատվավոր կոչման համար։ Այստեղ աչքի է ընկնում դիտողական հարուստ ագիտացիան, նրա նպատակասլաց ու կենդանի խոսքը։ Արտադրամասում սիստեմատիկաբար լույս են տեսնում «Լամպեր» պատի թերթը, «Աքցան» երգիծական թերթը, «Կոմերիտական լուսարձակը», «Կայծակ» թերթի-

կը։ Աչքի ընկնող տեղում փակցված են արտադրամասի 1964 թվականի սոցիալիստական մրցության պարտավորությունները և առաջավորների պատվո տախտակը։ Փոքրիկ դրոշակներն ազդարարում են, որ Ի. Ումրշատյանի և Գ. Գալստյանի ղեկավարած բրիգադներն արժանացել են կոմունիստական աշխատանքի կոչման։

Մեծ է դիտողական ագիտացիայի դերը արտադրական պլանների կատարման, արտադրանքի որակի բարձրացման, նյութերի խնայողության, առաջավորների փորձի փոխանակման գործում։ Գործարանի կոլեկտիվի համար կարևոր հարց է նյութերի խնայողությունը։ Այդ կապակցությամբ գեղարվեստորեն ձևավորված են հատուկ պլակատներ, որտեղ կարդում ենք. «Գիծը պայքարում է նյութերի խնայողության համար»։ Բայց ահա մի սև պլակատ, որի վրա գրված է. «Գիծը աշխատում է նյութերի գերածախսով»։ Այդ սև պլակատը մեծ ազդեցություն է թողնում տվյալ գծի աշխատողների վրա, որոնք իրենց աշխատանքում ամեն ջանք գործադրում են նրանից ազատվելու համար։ Օրինակ, առաջին եռամսյակում № 2 գիծը (բրիգադիր՝ Ա. Դալլաքյան) ունեցել է 170 ռուբլու, իսկ № 5 գիծը (բրիգադիր՝ Ա. Մարտիրոսյան) 100 ռուբլու նյութերի գերածախս։ Եվ երբ նրանց գծերում երևացին սև պլակատները, բրիգադների անդամները զգաստացան և սկսեցին աշխատել խնայողաբար։ Արդյունքը եղավ այն, որ արդեն երկրորդ եռամսյակում № 2 գիծը տվեց 130 ռուբլու, իսկ № 5 գիծը՝ 370 ռուբլու նյութերի խնայողություն։

Ավելի հետաքրքիր է կոթառների, ցերեկային լամպերի և պարույրների արտադրամասերի ցուցադրական ագիտացիան։ Այստեղ, բացի արտադրության վերաբերյալ պլակատներից, կան նաև պլակատներ, որոնք ցույց են տալիս կատարված խնայողությունը։ Ահա դրանցից մի քանիսը. «Մեկ տոկոս ժապավենի խնայողությունը համազոր է 500 կգ պողպատի և 30 կգ գունավոր մետաղի խնայողության», «Խնայած մեկ տոկոս գետինասով կարելի է արտադրել ցերեկային լամպի 20.000 հատ կոթառ»։ Կոթառների արտադրամասը 1963 թվականը փակել է նյութերի զգալի գերածախսումով։ Դա շատ է անհանգստացրել ինչպես ղեկավարությանը, այնպես էլ արտադրամասի ողջ կոլեկտիվին։ Ձեռնարկված միջոցառումների շնորհիվ այս տարի զգալիորեն իջավ նյութերի գերածախսը, իսկ ապրիլ և մայիս ամիսներին պողպատյա ժապավենի գիծը տվեց խնայողություն։



Այո, լամպագործները կոնկրետ գործերով են պատասխանում Ս. Մ. Կիրովի անվան քիմիական և Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանների ընդունած կոչին՝ խնայողության և տնտեսման ռեժիմ սահմանելու մասին։

Արտադրամասերում հանդիպում ենք մի շարք այլ պարտավորեցնող պլակատների, որոնք կոչ են անում խստորեն կիրառել խնայողության ռեժիմը. «Ցերեկային լամպերի 1000 հատ խողովակների (30 վատտանոց) կորուստը տալիս է 44 ռուբլու վնաս», «Պարույրի 1000 հատի կորուստը տալիս է 7 ռուբլու վնաս», «Տեխնոլոգիական ռեժիմի խախտումները զգալիորեն ավելացնում են խոտանի քանակը», «Որակի նկատմամբ լավագույն հսկողությունը փիղձն է», «Ռացիոնալ օգտագործենք ներքին ռեզերվները», «Արտադրենք որակյալ կիսաֆաբրիկատներ», «Սպառողներին ապահովենք բարձրորակ լամպերով» և այլն։

Ի դեպ, պետք է նշել, որ գործարանի մարդիկ մեծ եռանդով են մասնակցում դիտողական ագիտացիայի ծավալմանը, պատի ու երգիծական թերթերի լույս ընծայմանը, սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի ամփոփմանը։ Այդպիսի մի էնտուզիաստ է պարույրների արտադրամասի բանվոր, ցեխկոմի նախագահ Ս. Խլղաթյանը, որը օրգանական ապակու վրա գեղեցիկ ձևով ու խնամքով գրում է բազմաթիվ պլակատներ ու կոչեր։ Հենց այստեղ էլ մենք հանդիպեցինք կոմունիստական աշխատանքի կոչման արժանացած, առաջավոր բանվորուհի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի անդամ Ս. Առաքելյանին։ Նրա դազգահի վրա ամրացված է ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգիրը։ Ինչպես պլակատներում, այնպես էլ մասնավորապես պատի ու երգիծական «Կայծակ», «Կոմերիտական լուսարձակ» թերթերում ոչ միայն պրոպագանդվում է դրական աշխատանքը, առաջավորների փորձը, այլև խարազանվում են խոտանարարներն ու անկարգապահները։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո գործարանի պարտիական կոմիտեն, ցեխային սկզբնական պարտիական ու հասարակական կազմակերպությունները աշխատում են գտնել դիտողական ագիտացիայի նոր ձևեր ու մեթոդներ, որոնք նպաստելու են աշխատավորների քաղաքական դաստիարակության ու ձեռնարկության առջև ծառացած խնդիրների լուծման գործին։

Ն. ՍԱՂԱԹԵԼՅԱՆ

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԸ

## (Թվեր և փաստեր)

Կենսագործելով ՍՄԿՊ ծրագիրը՝ Սովետական Հայաստանի աշխատավորները հսկայական հաջողությունների են հասել ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման գործում։ Այդ մասին են վկայում Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1964 թվականի առաջին կիսամյակի պետական պլանի կատարման արդյունքները։

★ Գերակատարված է 1964 թվականի առաջին կիսամյակի արդյունաբերության համախառն արտադրանքի արտադրության պլանը։

★ 1963 թվականի նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, այս տարվա առաջին կիսամյակում, արդյունաբերական արտադրանքի թողարկումը ավելացել է 5,4 տոկոսով, այդ թվում՝ քիմիական արդյունաբերության արտադրանքը աճել է 35 տոկոսով, մեքենաշինությանն ու մետաղամշակմանը՝ 12, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 6 տոկոսով։

★ 1964 թվականի առաջին կիսամյակում արտադրվել է 18,1 հազար տոննա կաուստիկ սոդա, 171 տոննա բույսերի պաշտպանության և վնասատուների դեմ պայքարի քիմիական միջոցներ, որը անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ կազմում է 475 տոկոս։ Արտադրվել է նաև արհեստական և սինթետիկ թել՝ 3.392 տոննա, արհեստական և սինթետիկ մետաքս՝ 334 հազար տոննա։

★ Անցած վեց ամիսներին մեր ռեսպուբլիկայում արտադրվել է 573 հազար ավտոդող, 1.342 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներ-տրազոդման սարքավորում, 40 միլիոն լուսավորման էլեկտրալամպ։ 345 հազար կիլովատ շարժական էլեկտրակայան, 6,8 հազար էլեկտրազոդման սարքավորում, 40 միլիոն լուսավորման էլեկտրալամպ։

★ Այդ նույն ժամանակամիջոցում արտադրվել է նաև 4.141 մետաղահատ հաստոց, 3.192 կիլոմետր ռետինե մեկուսացմամբ ուժային կաբել, 18,8 հազար կիլոմետր լուսավորման քուղ, 1914 կիլոմետր շլանգային հաղորդալար, 28,2 հազար կենտրոնախույս պոմպ, 1.443 օդային կոմպրեսոր։

★ 1964 թվականի առաջին կիսամյակում մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը երկրին տվել է 75 հազար խորանարդ մետր սղոցանյութ, 783 տոննա թուղթ, 346 տոննա ստվարաթուղթ, 39,7



միլիոն պայմանական սալ շիֆեր, 229 հազար խորանարդ մետր հավաքովի երկաթբետոնե կոնստրուկցիա։

★ Անցած վեց ամիսներին արտադրվել է նաև 26 տոննա մետաքսի հումք, 32,6 միլիոն քառակուսի մետր բամբակե գործվածք, 3,6 միլիոն քառակուսի մետր մետաքսե և 2,4 միլիոն քառակուսի մետր բրդե գործվածք, 21,5 միլիոն զույգ գուլպեղեն, 14,8 միլիոն տրիկոտաժե սպիտակեղեն, 1.643 հազար տրիկոտաժե վերնազգեստ, 3.461 հազար զույգ կաշվե կոշիկ, 1.174 հազար ժամացույց։

★ Անցած կիսամյակում Երևանի նորաստեղծ դաշնամուրի ֆաբրիկան արտադրել է 205 դաշնամուր։

★ 1964 թվականի առաջին կիսամյակում արտադրվել է 2,5 հազար տոննա միս, 1.335 տոննա յուղ, 3.841 տոննա պանիր, 22,1 հազար տոննա անարատ կաթնամթերք՝ կաթի վերածած (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության), 3.343 տոննա երշիկ, 7,6 տոննա հրուշակեղեն, 19,5 միլիոն պայմանական տուփ պահածո, 6.060 տոննա մակարոն, 4.638 տոննա ձեթ, 10,3 հազար տոննա օճառ։

★ Անցած կիսամյակում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել է ավելի քան 6.000 առաջարկություն, որը տարեկան տալիս է մոտ 5 միլիոն ռուբլի խնայողություն։

★ Առաջին կիսամյակում ռեսպուբլիկայում և ժողտնտխորհի գծով աշխատանքի արտադրողականության պլանը կատարված է 103,6 տոկոսով։

★ Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ընթացիկ տարում 8.141 հեկտարով ավելի շատ գարնանացան հացահատիկային կուլտուրաներ են ցանել, քան 1963 թվականին։

★ Ընթացիկ տարվա գարնանը գցվել են 1.368 հեկտար պտղատու և 222 հեկտար խաղողի նոր այգիներ։

★ Պետությանը 1963 թվականին, առաջին կիսամյակի համեմատությամբ, վաճառվել է 1.582 ցենտներով ավելի բուրդ։

★ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները ունեն 478.975 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, այդ թվում՝ 144.063 կով։ 1963 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը աճել է 2,3 տոկոսով, իսկ խոզերի գլխաքանակը՝ 23,7, ոչխարներինը և այծերինը՝ 5,7 տոկոսով։ Առաջին կիսամյակում անասունի և թռչունի մսի արտադրությունը ավելացել է 3,8 տոկոսով։

★ Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը ստացել է 515 տրակտոր (ֆիզմիավոր), 528 բեռնատար ավտոմեքենա, 200 հացահատիկահավաք կոմբայն, 280 հանքային պարարտանյութ շաղ տվող մեքենա, 16 հերբիցիդաամոնիակային մեքենա, 286 հնձիչ, 110 ունիվերսալ բեռնիչ, 503 գութան, 126 շարքացան, 158 կուլտիվատոր և այլն։





★ 1964 թվականի առաջին կիսամյակում մեր ռեսպուբլիկայում բանվորների և ծառայողների թիվը կազմում էր մոտ 534 հազար և 1963 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ ավելացել էր մոտ 23 հազարով։

★ Անցած կիսամյակում բնակչությունը սպառման հանրային ֆոնդերի հաշվին կրթության, բուժման, կենսաթոշակների, նպաստների և այլ նպատակների համար ստացել է 140 միլիոն ռուբլի։

★ Անցյալ տարվա համեմատությամբ, այս տարվա առաջին կիսամյակում բնակչությանը վաճառվել է միս, երշիկեղեն և այլ մսամթերք՝ 100 տոկոս, ձուկ և այլ ձկնամթերք՝ 126, յուղ՝ 107, կաթ և կաթնամթերք՝ 117, շաքար՝ 119, հրուշակեղեն՝ 113, մակարոնեղեն՝ 149, տնտեսական օճառ՝ 111 տոկոս։

★ Բնակչությանը վաճառվել է նաև հագուստեղեն և սպիտակեղեն՝ 112, տրիկոտաժեղեն՝ 109, գուլպեղեն՝ 126, կաշվե կոշիկ՝ 107, սառնարան՝ 112, լվացքի մեքենա՝ 129, փոշեծծիչ՝ 111, ժամացույց՝ 121, հեռուստացույց՝ 107 տոկոս։

★ Մեր ռեսպուբլիկայում ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված է մոտ 510,5 հազար մարդ։ Հանրակրթական դպրոցներում սովորում էր մոտ 450,5 հազար աշակերտ։

★ Գիշերօթիկ դպրոցներում, երկարօրյա դպրոցներում ու խմբերում սովորում էին 16,4 հազար սովորող։

★ Ընթացիկ տարում ութամյա դպրոցը ավարտել է մոտ 27 հազար աշակերտ, կամ 4 հազարով ավելի, քան անցյալ տարի, միջնակարգ դպրոցն ավարտել է 7 հազար աշակերտ, կամ 2,5 հազարով ավելի, քան անցյալ տարի։

★ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 29,1 հազար ուսանող, կամ 3,2 հազարով ավելի, քան անցյալ տարի, միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 23,1 հազար մարդ, կամ անցյալ տարվանից 3 հազարով ավելի։

★ Պետական ու կոոպերատիվ միջոցների հաշվին առաջին կիսամյակում շահագործման են հանձնվել 230 հազար քմ ընդհանուր մակերեսով բնակելի տներ, կամ մոտավորապես 5 հազար բարեկարգ նոր բնակարան։

★ Պետական կապիտալ ներդրումների հաշվին կառուցվող բնակարանային տարածության շահագործման հանձնելու առաջին կիսամյակի պլանը կատարվել է 106 տոկոսով։

★ 1964 թվականի հուլիսի 1-ի դրությամբ Հայկական ՍՍՌ-ի բնակչության թիվը 2,1 միլիոնից ավելի է։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները շարունակում են իրենց նայրենանվեր աշխատանքը՝ ստանձնած պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար։

---



# ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

(ՏՊԱԳՐՎՈՒՄ Է ԱԶԱՏԱԳՐՈՒԹՅԱՆ XX ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ)

Քսան տարի է անցել այն նշանավոր օրվանից, երբ Ռումինիայի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական բանակի օգնությամբ տապալեցին ֆաշիստական ստրկության լուծը և հաստատեցին ժողովրդական իշխանություն։ Եվ 1944 թվականի օգոստոսի 28-ի շատ հայտնի օրն է, ռումին ժողովրդի ազգային մեծ տոնը։

Ազատագրությունից հետո ռումին ժողովուրդը ձեռք բերեց պետական ինքնուրույնություն և կարճ ժամանակում պանծալի հաջողությունների հասավ ժողովրդական տնտեսության զարգացման բոլոր բնագավառներում։ Ահա տեղեկություններ այդ մասին։

★ Երկու տասնամյակում Ռումինիան հետամնաց գյուղատնտեսական երկրից վերածվեց զարգացած սոցիալիստական տերության։

★ Ներկայումս Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկան երկու ամսից էլ քիչ ժամանակամիջոցում թողարկում է այնքան արդյունաբերական արտադրանք, որքան արտադրում էր Ռումինիան նախապատերազմյան շրջանի մի ամբողջ տարվա ընթացքում։

★ Դեռևս անցյալ տարի Ռումինիայի արդյունաբերական արտադրանքը 6,5 անգամ գերազանցեց 1938 թվականի մակարդակը։

★ 1960—1963 թվականներին երկրում գործարկվել է ժամանակակից տեխնիկայով հագեցված 160 նոր ձեռնարկություն և ցեխ։

★ Մինչև ժողովրդադեմոկրատական կարգեր հաստատվելը Ռումինիան էլեկտրասարքավորումներ էր ներմուծում արտասահմանից։ Այժմ երկրում նման ապարատներ շատ են արտադրվում և արտահանվում են արտասահմանյան ավելի քան 20 երկրներ։

★ Վերջին չորս տարվա ընթացքում ժողովրդական Ռումինիայի արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը կազմել է 15 տոկոս, պլանով նախատեսված 13 տոկոսի փոխարեն։

★ Այս տարի երկրում 13 տոկոսով ավելանալու է արտադրության միջոցների արտադրությունը, իսկ սպառման միջոցների արտադրությունը կավելանա 10 տոկոսով։

★ Նույն ժամանակամիջոցում էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 23 տոկոսով, մեքենաշինությանը՝ 15 տոկոսով, քիմիական արդյունաբերությանը՝ 23 տոկոսով։

★ Դեռևս անցյալ տարի մեքենաշինության արտադրանքի ծավալը գերազանցեց 1964 թվականի համար պլանով նախատեսված մակարդակը։

★ Ռեսպուբլիկայում բուռն թափով զարգանում է քիմիական արդյունաբերությունը։ Ներկայումս Ռումինիայում համախառն քիմիական արտադրանքը երկրորդ տեղն է գրավում։ 1963 թվականին, 1948 թվականի համեմատությամբ, երկրում քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացել է 23 անգամ։ Այժմ ռեսպուբլիկայի քիմիական գործարանները մոտ 3.500 տեսակի արտադրանք են թողարկում։

★ Վերջին տարիները մեկը մյուսի ետևից գործարկվում են մեծ քիմիայի նորակառույցները։ Շարք են մտել և քիմիական արտադրանք են տալիս «Վիկտորիա» քիմկոմբինատը, քլորի և սոդայի ձեռնարկությունները՝ Գովորեում, նոր քիմկոմբինատներ՝ Նեոդարկում ու Բորզեշտսկում, պլաստմասսայի ֆաբրիկաներ՝ Բուխարեստում և այլն։

★ Մինչև 1950 թվականը Ռումինիայում չկար էլեկտրատեխնիկական արդյունաբերություն։ Ներկայումս այնտեղ արտադրվում են տարբեր տեսակի էլեկտրաշարժիչներ, ուժային տրանսֆորմատորներ, ավտոմատ հեռախոսային կայաններ, դիզել-էլեկտրաքարշներ, ռադիոընդունիչներ, հեռուստացույցներ և այլն։

★ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1963 թվականին, 1959 թվականի համեմատությամբ, բարձրացավ 37 տոկոսով։

★ Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ 1962 թվականին ավարտվել է մանր գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացումը։

★ Այժմ Ռումինիայում կան մոտ 5 հազար կոլեկտիվ տնտեսություններ, որոնք միավորում են ավելի քան 3 միլիոն գյուղացիներ և ունեն 9 միլիոն հեկտար հող։

★ Ռեսպուբլիկայի պետական տնտեսությունները ներկայումս ունեն մեկ ու կես միլիոն վարելահող, որը կազմում է երկրի վարելահողերի ավելի քան 15 տոկոսը։ Մոտ ապագայում հողային այդ տարածությունը կհասնի երկու միլիոնի։

★ Ռումինիայի գյուղատնտեսությունը հագեցված է ժամանակակից տեխնիկայով։ Ներկայումս ռեսպուբլիկայում կա մոտ 65 հազար տրակտոր, 62 հազար տրակտորացանիչ, մոտ 32 հազար հացահատիկային կոմբայն և այլն։



★ Այս տարի Ռումինիայի գյուղատնտեսությունը նորից կստանա մեծ քանակությամբ տեխնիկա՝ 10 հազար տրակտոր, գյուղատնտեսական գործիքներ և այլն։

★ Անցյալ տարի, 1962 թվականի համեմատությամբ, ժողովրդական Ռումինիայում 84 տոկոսով ավելի շատ հանքային պարարտանյութեր օգտագործվեցին։

★ Չորս տարվա ընթացքում (1960—1963) երկրում հացահատիկային կուլտուրաների տարեկան միջին բերքը կազմել է 10 միլիոն տոննա՝ 1956—1959 թվականների 9 միլիոն տոննայի դիմաց։

★ Եկող տարի գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելանալու է 70—80 տոկոսով։ Այդ կապակցությամբ գյուղատնտեսության մեջ կատարվելու է կապիտալ խոշոր ներդրում՝ 23 միլիոն լեյ։

★ Բարձրագույն կրթությամբ գյուղատնտեսության մասնագետների ավելի քան 76 տոկոսը անմիջապես աշխատում է արտադրության մեջ։ Այժմ գյուղատնտեսության մեջ 9 անգամ շատ ագրոնոմներ ու տեխնիկներ, անասնաբույժներ ու զոոտեխնիկներ են աշխատում, քան 1938 թվականին։

★ Գնալով անընդհատ բարելավվում են աշխատավորների բնակարանային պայմանները։ Վերջին վեց տարվա ընթացքում ռեսպուբլիկայի աշխատավորներն ստացել են 300 հազար բնակարան։

★ Իսկական կուլտուրական ռևոլյուցիա է տեղի ունեցել ժողովրդական Ռումինիայում։ Արդեն անցում է կատարված ութամյա պարտադիր ուսուցմանը։ Մանկավարժական կադրեր պատրաստելու նպատակով երկրում ստեղծվել է 12 մանկավարժական ինստիտուտ։

★ Բարձրագույն ուսումնական հաստատությունների ցերեկային և երեկոյան բաժիններում դեռևս անցյալ տարի սովորում էին մոտ 100 հազար ուսանողներ։

★ Միայն Բուխարեստում կա մոտ 1.600 գրադարան։ Քաղաքի ամենախոշոր գրադարանը (գիտությունների ակադեմիայի) ունի 5 միլիոն հատոր գիրք։

Իր ազգային վերածնության 20-ամյակը ռումին ժողովուրդը նշանավորում է այսպիսի մեծագույն հաջողություններով, որոնք նա ձեռք է բերել համառ ու անձնուրաց աշխատանքով և եղբայրական սոցիալիստական երկրների, ամենից առաջ Սովետական Միության անշահախնդիր օգնության շնորհիվ։

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Կոմունիստական պարտիան ամբողջ ժողովրդի պարտիան է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Լենինյան պարտիան կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի կազմակերպիչն է, *տպագրված «ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը» գրքում, էջ 115—157, Հայպետհրատ, 1962։*

Բանվոր դասակարգի պարտիայից դեպի ամբողջ սովետական ժողովրդի պարտիա, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 14—16-րդ համարներում։*

## 2. Հմտորեն օգտագործենք ժողովրդի կուտակած փորձը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ելույթ Սարատովի մարզի «Դեկաբրիստ» սովխոզում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 6-ի համարում։*

Ընկ. Ն. Ս. Խրուշչովի զրույցը Վոլգոգրադի մարզի Կոտելնիկովոյի արտադրական վարչության «Ռոսիա» կոլտնտեսության ղեկավարների ու մասնագետների հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 8-ի համարում։*

Խորամուխ լինել էկոնոմիկայում, սովորել յուրաքանչյուր հեկտարից վերցնել առավելագույն քանակությամբ արտադրանք, ընկ. Ն. Ս. Խրուշչովի զրույցը Ռոստովի մարզի Զիմովնիկիի ձիաբուծարանի ղեկավարների ու մասնագետների հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 9-ի համարում։*

## 3. Ապահովենք անասունների կուշտ ձմեռումը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Անասնապահների անհետաձգելի խնդիրը, *«Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 4-ի առաջնորդողը։*

Կերի կուտակման համար մղվող պայքարում, *հոդվածներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 5-ի համարում։*

Զրույցի ընթացքում օգտագործել տեղական նյութեր։



## 4. Հավաքենք և ամբարենք մինչև վերջին հատիկը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Նոր բարի բերքահավաքին և հացամթերումներին, *Թղթակցություններ բերքահավաքի առաջավորների աշխատանքի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 4-ի համարում։*

Աշխատանքում են ծնվում հերոսները, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի օգոստոսի 2-ի համարում։*

Դարպասները բացվում են այստեղից, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թվականի օգոստոսի 6-ի համարում։*

Անդրկովկասի բերքառատ դաշտերում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 29-ի համարում։*

## 5. Աշխատենք մոսկվացիների օրինակով

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեում, արտադրանքի յուրաքանչյուր տեսակը առանց վնասի արտադրելու՝ Մոսկվայի քաղաքային ժողտնտխորհի տասնհինգ ձեռնարկությունների կոլեկտիվների նախաձեռնության մասին, որոշում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. օգոստոսի 8-ի համարում։*

Արշավ խնայողության համար, *հոդված, տպագրված «Երեկոյան Երևան»-ի 1964 թ. օգոստոսի 7-ի համարում։*

Սարքաշինարարների նոր նվաճումները, *հոդված, տպագրված, «Երեկոյան Երևան»-ի 1964 թ. օգոստոսի 5-ի համարում։*

## 6. Վճռականորեն պայքարենք սովետական նոր սովորույթների արմատավորման համար

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Արդյոք հանդուրժելի՞ են կրոնական ծիսակատարությունները կոմունիստի ընտանիքում, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 10-րդ համարում։*

Հնացած սովորույթների ու տրադիցիաների մասին, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 12-րդ համարում։*

Լայն ճանապարհ սովետական նոր տոներին ու արարողություններին, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. հուլիսի 25-ի համարում։*

Զրույց նոր տոների ու սովորույթների մասին, *հոդված, տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1964 թ. 15-րդ համարում։*

## Սառնության ակումուլյատոր

*Պարզվում է, որ սառնությունը կարելի է հավաքել, կուտակել։ Այդ փորձը կատարել է ԳԴՌ ինժեներ Հոֆմանը։ Ակումուլյատորը նման է փակ ծրարի, լցված հատուկ մասսայով, որը և ունի սառնությունը կլանելու և պահելու հատկություն։ Ծրարը դնելով սառնարանի մեջ (—20 աստիճանի տակ), այն որոշ ժամանակ թողնում են, որպեսզի կլանի սառնությունը և ապա հանում են։ Ծրարը իր մեջ սառնությունը պահում է 10—12 ժամ։ Այդ ծրարը շատ օգտակար է ամենօրյա օգտագործման համար։ Այն կարելի է օգտագործել ինչպես աշխատանքի վայրում նախաճաշը պահելու, այնպես էլ ճանապարհորդության ժամանակ՝ ուտելիքը թարմ վիճակում և փչանալուց զերծ պահելու համար։ Կարևորն այն է, որ այդ նույն ծրարը կարելի է սառեցնել մի քանի անգամ։*

## Մրջյուններր ոչնչացնում են անտառային վնասատուներին

*Վերջերս գիտական ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հնարավոր է օգտագործել մրջյուններին անտառային վնասատուների դեմ մղվող պայքարում։*

*Գիտնականները հաստատել են, որ մրջյունները սնվում են վնասատու միջատների թրթուրներով և հարսնյակներով, որոնք գտնվում են ծառերի վրա, դրանով իսկ վնասատուներից մաքրելով ծառերը արմատից մինչև գագաթը։*

*Այս երևույթը ուսումնասիրել են ՌԺՌ անտառային գիտահետազոտական ինստիտուտի գիտաշխատողները։ Խորանալով մրջյունների տարբեր տեսակների հատկությունների ուսումնասիրության մեջ, նրանք հայտնագործել են մրջյունների երկու տեսակ, որոնք շատ մեծ արագությամբ ոչնչացնում են տարբեր վնասատուների։ Հենց այդ մրջյուններին էլ այժմ տարածում են Մոլդավիայի, Կարպատյան և Դոբրուջյան անտառներում։*

## Թղթի «բուժումը» վիտամինով

*Իտալացի բիոքիմիկոս Մարիո Պինցուտին մշակել է վիտամիններով թղթի բուժման մեթոդը։ Վիտամիններով Պինցուտին «բուժում» է, այսինքն՝ վերականգնում է հնագույն ձեռագրերն ու գրքերը։*

*Այժմ այս մեթոդով բուժում են բոլոր հին ձեռագրերն ու թղթերը։ Պինցուտիի մշակած մեթոդը կանխում է թղթի հետագա քայքայումը և ապահովում դրա երկարակեցությունը։*






# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ռ. ՍԱՀԱԿՅԱՆ, Սովետա-թուրքական հարաբերությունների պատմության հակագիտական լուսաբանումը ժամանակակից թուրք պատմագրության մեջ, ՀՍՍՌ ԳԱ *հրատարակություն, 130 էջ, տպաքանակ 10.000, գինը 32 կոպ.։*

*Աշխատությունը նվիրված է հետպատերազմյան տարիներին Թուրքիայում, ինչպես և ԱՄՆ-ում լույս տեսած թուրք հեղինակների՝ պատմաբանների, քաղաքական, պետական ու ռազմական գործիչների այն աշխատությունների վերլուծությանը, որոնցում զգալի տեղ է հատկացված սովետա-թուրքական հարաբերությունների պատմության հարցերին։*

*Հրապարակված դիվանագիտական փաստաթղթերի, արխիվային և այլ նյութերի հիման վրա ցույց է տրվում, որ ժամանակակից թուրք պատմագրության մեջ սովետա-թուրքական հարաբերությունների պատմության հիմնական հարցերը լուսաբանվում են միտումնավոր ձևով, հակագիտական դիրքերից, խեղաթյուրվում է Թուրքիայի նկատմամբ Սովետական Միության վարած քաղաքականությունը։*

Լ. Հ. ԲԱԲԱՅԱՆ, Հայաստանի սոցիալ-տնտեսական և քաղաքական պատմությունը 13—14-րդ դարերում, *Հայկ. ՍՍՌ ԳԱ ակադեմիկոս* Ս. Տ. Երեմյանի *խմբագրությամբ, Հայպետհրատ, 600 էջ, տպաքանակ 3000, գինը 80 կոպ.։*

*Աշխատությունը նվիրված է Հայաստանի և հայ ժողովրդի պատմության ամենաքիչ ուսումնասիրված մի էտապի՝ Զաքարյան ֆեոդալական իշխանության և մոնղոլական տիրապետության ժամանակաշրջանի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պատմությանը։*

*Հանգամանորեն լուսաբանված են մոնղոլական արշավանքները դեպի Հայաստան, նրա նվաճումը, նվաճողների վարած սոցիալ-տնտեսական քաղաքականությունը, քոչվորական ֆեոդալիզմի ազդեցությունը Հայաստանի էկոնոմիկայի և արտադրողական ուժերի վրա։ Տրված են մոնղոլների տիրապետության հետևանքով երկրի տնտեսական կյանքի անկման, ամայացման, արտադրողական ուժերի խիստ կրճատման պատկերը և այն հիմնական պատճառները, որոնք դրեցին ավելի քան 500 տարի շարունակված տնտեսական կյանքի դեգրադացիայի սկիզբը։*

ՌՈՒՄԻՆԱԿԱՆ ՔՆԱՐ, *Ընտիր էջեր, թարգմանությունը և առաջաբանը՝* Գ. Բորյանի, *Հայպետհրատ, 254 էջ, տպաքանակ 2000, գինը 51 կոպ.։*

*Ընտիր էջերը բովանդակում են ռումինական ժողովրդական, դասական և ժամանակակից պոեզիայի նմուշներ։*

ԻՆԴԵՔՍ՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 16

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

*ՎՖ 08414* *Պատվեր 647* *Տիրաժ 8981*

*Հանձնված է արտադրության 12/VIII 1964 թ.:*
*Ստորագրված է տպագրության 18/VIII 1964 թ.:*

*ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,*
*Երևան, Կնունյանցի № 8:*
*Գինը 8 կոպ.:*